Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի ԲԼՈԿՆՈՏ



№ 18 ՍԵՊՏԵՄԲԵՐ 1958

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



---

Խմբագրության հասցեն.— Երևան, ՀԿՊ Կենտկոմ, II հարկ, 69-րդ սենյակ։ Հեռախոս՝ 2—52—78։



# ԵԳԻՊՏԱՑՈՐԵՆԸ ՄԻՍ Է, ՅՈՒՂ ԵՎ ԿԱԹ

*Հինգ տարի առաջ ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի Սեպտեմբերյան պլենումը մշակեց և գործողության մեջ դրեց սոցիալիստական գյուղատնտեսության շեշտակի վերելքի պատմական ծրագիրը, որը դարձավ կոլտնտեսային գյուղացիության, սովխոզների բանվորների, սովետական ամբողջ ժողովրդի պայքարի ու հաղթանակի ուղեցույցը՝ երկրում գյուղատնտեսական մթերքների և հումքի առատություն ստեղծելու համար։ Հինգ տարին երկար ժամանակ չէ, բայց մեծ են ձեռք բերված հաղթանակները։ Գյուղատնտեսության բոլոր ճյուղերն էլ դուրս են եկել մեծ վերելքի ուղին, զգալիորեն աճել է հացահատիկի, բամբակի, շաքարի ճակնդեղի և մյուս բոլոր կուլտուրաների արտադրությունը։*

*ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի Սեպտեմբերյան պլենումի որոշման մեջ առանձ-*

նահատուկ կերպով դրված էր եգիպտացորենի մշակությունն արագորեն զարգացնելու հարցը, որպես անասնաբուծության վերելքի կարևոր միջոցառում։

Պարտիան ու կառավարությունը հետագայում մի շարք որոշումներ ընդունեցին գյուղատնտեսության վերելքի միջոցառումների վերաբերյալ, որոնց մեջ նորից ու նորից մեր գյուղատնտեսության բոլոր աշխատողների կարևորագույն խնդիրը համարեցին եգիպտացորենի մշակությունը ամենալայն չափերով արմատավորելը, այդ արժեքավոր կուլտուրայի բերքատվության բարձրացումը։ Պարտիան ու կառավարությունը մեծ օգնություն ցույց տվեցին կոլտնտեսություններին ու սովխոզներին եգիպտացորենի կուլտուրան լայնորեն արմատավորելու գործում։ Այդ ամենի շնորհիվ եգիպտացորենի ցանքատարածությունը մեր երկրում, որ նախկինում աննշան չափերի էր հասնում, աճեց ու ընդարձակվեց, կազմելով միլիոնավոր հեկտարներ։ Այժմ մեր լայնածավալ Հայրենիքի բոլոր մասերում չկա մի վայր, որտեղ եգիպտացորենը մուտք գործած չլինի։ Այդ արժեքավոր կուլտուրան մեծ ժողովրդականություն է վայելում և հանդիսանում է անասնաբուծության կերի



բազայի հիմնական աղբյուրներից մեկը։ Մի շարք միջոցառումների հետ միասին եգիպտացորենի մշակությունը լուրջ դեր խաղաց անասնաբուծությունը բարձիթող վիճակից դուրս բերելուն, նրա արտադրանքը նշանակալից չափերով ավելացնելու համար։

Եգիպտացորենի մշակությունը լավ արդյունքներ է տվել նաև մեր ռեսպուբլիկայում։ Բազմաթիվ կոլտնտեսություններում վերջին երկու-երեք տարիների ընթացքում մսի և հատկապես կաթի արտադրությունը երկու և ավելի անգամ աճել է, որը բացատրվում է հյութալի կերի պաշարների ավելացմամբ։ Վերցնենք թեկուզ Վեդու շրջանի Շիրազլու գյուղի կոլտնտեսությունը։ 1955 թվականին ամեն մի կովից 510 կիլոգրամ կաթ էր ստացել այդ կոլտնտեսությունը։ Հյութալի կեր այդ ժամանակ կոլտնտեսությունը գրեթե չէր արտադրում։ Հաջորդ տարում այստեղ սկսվեց եգիպտացորենի մշակությունը և կովի կաթնատվությունը մեկ տարում աճեց 300 կիլոգրամով։ 1957 թվականին կոլտնտեսությունը մշակեց 68 հեկտար եգիպտացորեն և ամեն մի կովի համար պատրաստեց 6 տոննա սիլոս։ Դրա շնորհիվ նույն տարում մեկ կովի կաթնատվությունը նորից բարձրացավ,

հասնելով 1025 կիլոգրամի։ Մինչև այս տարվա յայլաղային սեզոնի սկսվելը կոլտնտեսության անասնապահները կովերին առատորեն կերակրում էին սիլոսով, որը և տվեց իր հիանալի արդյունքը։ Անցած 7 ամսում նախորդ ամբողջ տարվա համեմատությամբ ամեն մի կովից ավելի է ստացվել 222 կիլոգրամ կաթ։

Տեսնելով եգիպտացորենի այդպիսի մեծ օգուտը, Շիրազլուի կոլտնտեսականները այս տարի 65 հեկտարով ընդարձակեցին նրա ցանքատարածությունը, հասցնելով 133 հեկտարի։ Ցանքատարածությունը ընդարձակելու նպատակով յուրացվեց խոպան հողեր և լայնորեն արմատավորվեց խոզանացանը։ Դրա հետ միասին կոլտնտեսականները մեծ խնամքով, ագրոտեխնիկական պահանջներին համապատասխան մշակեցին ցանքերը. նրանք գարնան և ամռան ընթացքում մի քանի անգամ քաղհանեցին ու փխրացրին, նոսրացրին և երկու անգամ էլ քիմիական և օրգանական պարարտանյութերով սնուցեցին ցանքերը։ Այդ միջոցառումները ապահովեցին բարձր բերքի ստացումը։ Բերքն ամբողջապես հավաքվեց սեփական կոմբայնով։ Այժմ արդեն ամեն մի կովի համար կուտակված է 7 տոն-



նա սիլոս, իսկ երկուսից—երեք տոննա էլ կպատրաստվի խոզանացանի բերքից։ Դրա հետ միասին բերքի մի մասը կօգտագործվի որպես կանաչ կեր։ Այդպիսով, մեկ տարվա ընթացքում կոլտնտեսությունը կաթի արտադրությունն ավելացնում է մոտ երկու անգամ։

Շիրազլուի կոլտնտեսության օրինակը եզակի չէ։ Կարելի է ռեսպուբլիկայի բոլոր շրջաններից բազմաթիվ կոլտնտեսություններ հիշատակել, որոնք զարգացնելով եգիպտացորենի մշակությունը, կարողացել են լուրջ հաջողությունների հասնել մսի ու կաթի արտադրության ավելացման գործում։ Արձագանքելով Կուրսկի մարզի գյուղատնտեսության աշխատողների դիմումին, մեր ռեսպուբլիկայի կոլտնտեսականները, մեխանիզատորները և մասնագետները այս տարի եգիպտացորենի լավ բերք են աճեցրել։ Այժմ գլխավոր խնդիրն այն է, որ այդ բերքը հավաքվի և սիլոսացվի ժամանակին, առանց կորստի։

Պարտիան ու կառավարությունը գյուղատնտեսության աշխատողների առջև դրել են համաժողովրդական մեծ խնդիր՝ յուրաքանչյուր շնչին ընկնող մսի, կաթի և յուղի արտադրությամբ մոտակա տարիներին

հասնել Ամերիկայի Միացյալ Նահանգնե-
րին։ Այդ խնդիրը հաջողությամբ լուծելու
համար առաջիկայում ավելի մեծ ուշադրու-
թյուն պետք է դարձվի եգիպտացորենի
մշակության զարգացման վրա, լուրջ քայլեր
պետք է արվեն ցանքատարածությունն ըն-
դարձակելու և բերքատվությունը բարձրաց-
նելու ուղղությամբ։ Մեր ռեսպուբլիկայի
կոլտնտեսությունները պատրաստում են
մոտ կես միլիոն տոննա սիլոս, միջին հաշ-
վով ամեն մի կովի համար չորս տոննա։
Կան ոչ քիչ թվով կոլտնտեսություններ, ո-
րոնք յուրաքանչյուր կովի համար կուտա-
կում են 2—3 տոննա սիլոս։ Այսպես շա-
րունակել չի կարելի։ Այդքան չնչին քանա-
կությամբ հյութալի կերով անհնար է անա-
սունների մթերատվությունը ցանկալի չա-
փերով բարձրացնել։ Առաջավոր կոլտնտե-
սությունների օրինակով անհրաժեշտ է ե-
գիպտացորենի մշակությունը զարգացնել
այնպիսի չափերով, որ հնարավոր դառնա
ամեն մի կովի համար կուտակել առնվազն
10 տոննա սիլոս և բավականաչափ կողր
տրամադրել խոզաբուծական ֆերմաներին։
«Անասնաբուծության զարգացման հա-
մար,— ասում է ընկ. Խրուշչովը,— եգիպ-
տացորենն ամենից շահավետ կուլտուրան



է...։ Առայժմ չկա մի ուրիշ կուլտուրա, որը կարողանա մրցել եգիպտոցորենի հետ աշխատանքի ծախսման և մեկ հեկտարից կերի միավորների ստացման գծով»։

Եգիպտացորենի մշակության զարգացումը պետական և ժողովրդա-տնտեսական նշանակություն ունեցող խնդիր է, որի հաջող լուծման համար պետք է գործի դրվի նաև քաղաքական-մասսայական աշխատանքի մեծ ու կազմակերպող ուժը։ Գյուղական ագիտատորն իր գործունեության ընթացքում միշտ և միշտ աշխատավորներին պետք է պարզաբանի այդ արժեքավոր կերային կուլտուրայի տված օգուտը, կոնկրետ օրինակներով ցույց տա, որ եգիպտացորենը միս է, յուղ և կաթ։

Պարտիան իր անդամներից, մեր ագիտատորներից պահանջում է, որ նրանք ոչ միայն աշխատավորներին կոչ անեն եգիպտացորեն մշակել կամ բարձր բերք աճեցնել, այլև սովորեցնեն նրանց, օգնեն ցանքի ու մշակության առաջավոր եղանակները կիրառելու համար։ Այդ նշանակում է, որ ագիտատորը նախ ինքը պետք է սովորի և իմանա ցանքի ու մշակության ագրոտեխնիկան, հակառակ դեպքում միայն կոչ անելով նա լավ արդյունքի չի հասնի։ Մեզ

մոտ դեռևս շատ քիչ չափերով է կիրառվում ցանքի քառակուսի-բնային եղանակը, որը շատ մեծ առավելություններ ունի սովորական եղանակի նկատմամբ։ Քառակուսի-բնային եղանակը հնարավորություն է տալիս մեքենայացնել մշակության աշխատանքները, ապահովել ցանքի կանոնավոր աճը, հետևաբար նաև բարձր բերքատվությունը։ Բանն այն է, որ եգիպտացորենի մշակության ասպարեզում աշխատողները դեռևս չեն տիրապետում առաջավոր եղանակներին և դրա հետևանքով գործը առաջ չի գնում։ Հարկավոր է բարձրացնել մարդկանց ագրոտեխնիկական գիտելիքների մակարդակը, համբերատար կերպով պարզաբանել նրանց առաջավորների փորձը, այցելություններ կազմակերպել գիտական հիմնարկների փորձադաշտերը։

Ընդարձակելով եգիպտացորենի ցանքատարածությունները և բարձրացնելով բերքատվությունը, մեր կոլտնտեսություններն ու սովխոզները հաջողությամբ կկատարեն պարտիայի ու կառավարության առաջադրած խնդիրը՝ կարտադրեն ավելի շատ միս, յուղ և կաթ։

---

# ՄՈՍԿՎԱՅԻ ԱԿԱԴԵՄԻԱԿԱՆ ՄԵԾ ԹԱՏՐՈՆԸ ԵՐԵՎԱՆՈՒՄ

Կ. ՊՈՂՈՍՅԱՆ

ՀԿՊ Կենտկոմի գիտության, կուլտուրայի և ուսումնական հաստատությունների բաժնի վարիչի տեղակալ

Սեպտեմբերի 2-ից 13-ը Երևանի Ալ. Սպենդիարյանի անվան օպերայի և բալետի պետական ակադեմիական թատրոնում տեղի ունեցան ՍՍՌՄ պետական ակադեմիական Մեծ թատրոնի գաստրոլները։ Մեծ թատրոնն իր 183-րդ թատերաշրջանն սկսեց Հայաստանի մայրաքաղաքում։

1776 թվականին ռուսական առաջավոր հասարակայնության նախաձեռնությամբ Մոսկվայում հիմնադրվեց Մեծ թատրոնը։

Մեր Հայրենիքի հնագույն ու փառապանծ օպերային թատրոններից մեկի ստեղծագործական ուղին բնորոշվում է ռեալիստական մեծ արվեստի համար մղված եռանդուն ու հետևողական պայքարով։

Անցյալ դարի 40-ական թվականներին

ռուս ժողովուրդն առաջին անգամ Մեծ Թատրոնի դահլիճում լսեց ռուսական օպերայի հայր Գլինկայի գլուխգործոցները՝ «Իվան Սուսանին»-ը ու «Ռուսլան և Լյուդմիլա»-ն։

Գլինկայից հետո Թատրոնի բեմում իրար հաջորդեցին կոմպոզիտորներ՝ Դարգոմիժսկին, Սերովը, Մուսորգսկին, Բորոդինը, Ռիմսկի-Կորսակովը և, վերջապես, Չայկովսկին։ Վերջինս մեծ դեր է խաղացել ռուսական ազգային երաժշտական կուլտուրայի զարգացման գործում։ Նրա օպերաների և բալետների բեմադրությունները նոր և փայլուն էջ են բացել Մեծ Թատրոնի պատմության մեջ։

Ռուսական նոր, իսկական դերասանական արվեստի հիմքերը դրին մեծ երգիչ-արտիստներ՝ Շալյապինը, Նեժդանովան, Սոբինովը, հաստատելով հայրենական երգեցիկ կուլտուրայի համաշխարհային փառքը։ Ռուսական բալետը, հանձինս Ա. Գորսկու, Լ. Ռոսլաևայի, Վ. Տիխոմիրովի, Ե. Գելցերի և ուրիշների, համաշխարհային հռչակ ստացավ։

Սակայն 1905 թվականի ռևոլյուցիայի պարտությունից հետո ստեղծված քաղաքական ռեակցիան, կայսերական թատրոնների դիրեկցիաների վարած պահպանողական



քաղաքականությունը իջեցնում և արգելակում են Մեծ Թատրոնի ստեղծագործական աճը։

Միայն Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիան Թատրոնն ազատեց ռուս ժողովրդի երաժշտական կուլտուրայի կուտակած ազգային արժեքները ընդմիշտ կորցնելու վտանգից։ Ռևոլյուցիան Մեծ Թատրոնի արվեստին նոր, բարձր գաղափարական բովանդակություն հաղորդեց։ Նա նոր կյանք տվեց Թատրոնի արվեստին, նրա առաջ բացեց ստեղծագործական զարգացման ամենալայն հեռանկարներ։

Մեծ Թատրոն եկան նոր հանդիսատեսներ՝ բանվորներ, գյուղացիներ, զինվորներ։ Թատրոնի առաջ ծառացավ մի ամենաշնորհակալ խնդիր՝ ժողովրդական մասսաներին ցույց տալ ռուսական երաժշտության մեծ կուլտուրայի հսկայական հարստությունները։

Զարգացնելով կոմպոզիտորների հետ ունեցած ստեղծագործական համագործակցության տրադիցիաները, Մեծ Թատրոնը 1918 թվականից սկսած բեմադրել է սովետական կոմպոզիտորների ավելի քան 40 օպերա և բալետ։

Սովետական օպերային դրամատուրգիայի ամրապնդման ու զարգացման համար մեծ

նշանակություն ունեցան Ի. Ձերժինսկու «Խաղաղ Դոն» օպերայի, Ռ. Գլիերի «Կարմիր կակաչ» և «Պղնձե հեծյալ» բալետների, Բ. Ասաֆևի «Բախչիսարայի շատրվան»-ը ու «Փարիզի բոցը» բալետների և այլ օպերաների ու բալետների բեմադրությունները։

Թատրոնի ստեղծագործական աշխատողները չեն պարփակվում իրենց թատրոնի պատերի մեջ։ Մեծ թատրոնի արտիստներին կարելի է տեսնել գործարանների ու ֆաբրիկաների ակումբներում, միութենական ռեսպուբլիկաների օպերային թատրոնների և կոլտնտեսային կուլտուրայի տների բեմերում։ Նրա առաջատար մենակատարների նախաձեռնությամբ զարգանում է կուլտուրական շեֆությունը մեծ կառուցումների կոլեկտիվներում։ Բարձր է գնահատված Մեծ թատրոնի արտիստների վարպետությունը։ Թատրոնի 88 աշխատողներ արժանացել են պատվավոր բարձր կոչումների, շատերը պարգևատրված են Սովետական Միության շքանշաններով ու մեդալներով։ Երաժշտական արվեստի զարգացման գործին մատուցած ակնառու ծառայությունների համար 1937 թվականին Մեծ թատրոնը պարգևատրվել է Լենինի շքանշանով։

Վերջին տարիների ընթացքում Մեծ թատ-



րոնը անկրկնելի հաջողությամբ ելույթներ ունեցավ արտասահմանյան մի շարք երկրներում։

Եվ ահա, երաժշտական արվեստի այդ մեծ օրրանը Հայաստանում է։

Առաջին հանդիպումը տեղի ունեցավ Ալավերդիում։ Կառամատույցի վրա հավաքված ձուլողները, քիմիագործները, ինտելիգենցիայի և երիտասարդության ներկայացուցիչները, Երևանի Ալ. Սպենդիարյանի անվան օպերայի և բալետի թատրոնի արտիստները, Մոսկվա—Երևան գնացքը, որով գալիս էին Մեծ թատրոնի արտիստները՝ դիմավորեցին ջերմ ու սրտագին ողջույններով։

Հետևյալ հանդիպումը կայացավ Արարատյան դաշտում՝ Հոկտեմբերյանում։ Երկրի օպերային փառաբանված կոլեկտիվին դիմավորեցին շրջանի պարտիական, սովետական ղեկավար աշխատողները, կոլտնտեսականները, մայրաքաղաքի երաժշտական հասարակայնության և մամուլի ներկայացուցիչները։

Վերջապես հյուրերին բերող գնացքը մոտենում է Երևանի կայարանին։ Սկսվում է թռուցիկ միտինգը, հնչում են ռուսական և հայկական երաժշտության մեղեդիները։

Հանդիսավոր և սրտառուչ էր Երևանի աշխատավորության ու Մեծ թատրոնի արտիստների հանդիպումը։

Այնուհետև սկսվում են Մեծ թատրոնի տաղանդավոր կոլեկտիվի գաստրոլները։ Առաջինը բեմադրվում է անմահ Գլինկայի «Իվան Սուսանին» օպերան, որն ավելի քան մեկ դար է չի իջնում թատրոնի բեմից։

«Իվան Սուսանին»-ը հայրենասիրական, հերոսական օպերա է, որտեղ վառ կերպով արտահայտված է ռուս ժողովրդի անսահման սերը Հայրենիքի նկատմամբ։ Այդ օպերայի դրամատուրգիական զարգացման կենտրոնում հասարակ ռուս գյուղացու կերպարն է, որը հանուն Հայրենիքի զոհաբերում է իր կյանքը։ Սուսանինը թշնամու ջոկատը տանում է ձյունածածկ, անանցանելի, խուլ անտառ, թշնամիներին մատնում է կործանման և ինքն էլ դառնում նրանց զոհը։

Օպերայում ծավալվում են ռուսական բնության և ռուսական գյուղի կենցաղի գունեղ պատկերներ, գյուղացիական ծեսերի, ժողովրդի ուրախության և տխրության տեսարաններ։

«Իվան Սուսանին» օպերայում գլխավոր դերերի կատարմամբ հանդես եկան՝ ՌՍՖՍՌ



ժողովրդական արտիստ Ի. Պետրովը և վաստակավոր արտիստ Ն. Շեգոլկովը (Իվան Սուսանին), ՌՍՖՍՌ ժողովրդական արտիստուհի Վ. Ցիրսովան (Անտոնիդա) և ուրիշներ։

1898 թվականին Մեծ թատրոնը իր բեմում առաջին անգամ իրականացրեց ռուս մեծ կոմպոզիտոր Ա. Բորոդինի «Իշխան Իգոր» օպերայի բեմադրությունը։ Այդ օպերայում, որը բարձր գնահատվեց հայ հանդիսականների կողմից, վառ արտահայտված են Հայրենիքի պաշտպանության, ռուս ժողովրդի անխորտակելի ուժի գաղափարները։ Օպերայի լիբրետոն գրված է ռուսական ֆոլկլորի գլուխ գործոցներից մեկի՝ «Ասք Իգորի գնդի մասին» էպոսի հիման վրա։

Օպերայում գլխավոր դերերում հանդես եկան ՍՍՌՄ ժողովրդական արտիստներ՝ Ա. Իվանովը (իշխան Իգոր), Ս. Լեմեշևը (Վլադիմիր Իգորևիչ) և Ա. Կրիվչենյան (Կոնչակ) և ուրիշներ։

Երկու ներկայացումների դիրիժյորն էր ՍՍՌՄ ժողովրդական արտիստ Ա. Մելիք-Փաշաևը։ Բեմադրող-ռեժիսյորը՝ ՌՍՖՍՌ արվեստի վաստակավոր գործիչ Լ. Բարատովը։

Մեծ թատրոնը Երևանում իր գաստրոլների ժամանակ չորս օպերային ներկայացումներից բացի, ցուցադրեց նաև Պ. Չայկովսկու «Կարապի լիճը» բալետը, որն անցավ մեծ հաջողությամբ։ Բալետում հանդես եկավ երիտասարդ շնորհալի պարուհի Ռ. Կարելսկայան, ՌՍՖՍՌ վաստակավոր արտիստ Յու. Կոնդրատովը և ուրիշներ։

Ներկայացման դիրիժորն էր Ա. Ցեյտլինը։

1957 թվականին, գերմանական հանճարեղ բանաստեղծ ու գրող Գյոթեի մահվան 125-րդ տարելիցին Մեծ թատրոնը բեմադրեց ֆրանսիական կոմպոզիտոր Մասնեի «Վերթեր» օպերան, որի լիբրետոն գրված է ըստ Գյոթեի հանրահայտ վեպի։

«Վերթեր»-ը բեմադրվել է աշխարհի գրեթե բոլոր ամենախոշոր թատրոններում, ինչպես նաև ռուսական բեմերում։ Օպերան գրված է լիրիկական ջերմ շնչով, լի բազմաթիվ գեղեցիկ ու մելոդիկ դուետներով, ոճը միանգամայն պարզ է և դյուրըմբռնելի։

«Վերթեր»-ի բեմադրությունը Մեծ թատրոնի բեմում իրականացրել է ՍՍՌՄ ժողովրդական արտիստ Ս. Լեմեշևը, որն առաջին անգամն է հանդես գալիս որպես ռեժիսոր։ Նա ինքն էլ մեծ հաջողությամբ կատարում է Վերթերի դերը։



Ներկայացման դիրիժորն է ՌՍՖՍՌ ժողովրդական արտիստ, պրոֆեսոր Բ. Խայկինը։

1956 թվականին, բավական երկար ընդմիջումից հետո, Մեծ թատրոնն իրականացրեց Մոցարտի «Ֆիգարոյի ամուսնությունը» օպերայի բեմադրությունը, որը նվիրված էր մեծ կոմպոզիտորի ծննդյան 200-ամյակին։

Կոմպոզիտորի օպերային ստեղծագործության մեջ «Ֆիգարոյի ամուսնությունը» նրա մյուս օպերաների՝ «Կախարդական սրնգի» և «Դոն-Ժուան»-ի հետ, հատուկ տեղ է գրավում։ «Ֆիգարոյի ամուսնությունը» ունկընդիրներին հրապուրում է երաժշտական կատարելությամբ, մեծ վարպետությամբ ու բարձր արվեստով գրված դերերգերով ու ռեչիտատիվներով, անսահման լիրիկականությամբ։ Այս օպերայի բեմադրությունը Մեծ թատրոնում կատարել են գլխավոր ռեժիսոր, ՌՍՖՍՌ և Բելոռուսական ՍՍՌ ժողովրդական արտիստ Բ. Պոկրովսկին և Գ. Անիսիմովը։ Ներկայացման դիրիժորն է ՌՍՖՍՌ ժողովրդական արտիստ պրոֆեսոր Բ. Խայկինը։

Ներկայացումներից բացի, թատրոնի լա-

վագույն արտիստական ուժերը ելույթներ ունեցան համերգներում, որտեղ կատարեցին թատրոնի ռեպերտուարում գտնվող օպերաներից և բալետներից բազմաթիվ արիաներ, դուետներ, պարեր ու առանձին հատվածներ։

Անշուշտ, մեծ հետաքրքրություն առաջացրեց նաև Բեթհովենի ստեղծագործությանը նվիրված սիմֆոնիկ համերգը։

Մեծ թատրոնի ներկայացումներն ու համերգները անցան բարձր մակարդակի վրա ու ջերմ ընդունելություն գտան մեր մայրաքաղաքի հանդիսականների կողմից։

Նման գաստրոլների նշանակությունը շատ մեծ է։ ՍՍՌՄ Մեծ թատրոնի ժամանումը Երևան Կոմունիստական պարտիայի լենինյան ազգային իմաստուն քաղաքականության վառ դրսևորումն է։

---

ՕԳՏԱԳՈՐԾԻՐ ՋՐՈՒՅՑԻ ԺԱՄԱՆԱԿ

## Ի ՊԱՏԻՎ ՄԵԾ ՀՈԿՏԵՄԲԵՐԻ

(Թվեր և փաստեր)

Աշխատանքային բուռն խանդավառություն է տիրում մեր ռեսպուբլիկայի քաղաքներում և գյուղերում։ Մտնելով Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ Ռևոլյուցիայի 41-րդ տարեդարձին նվիրված սոցիալիստական մրցության մեջ, բազմաթիվ ձեռնարկություններ, կոլտնտեսություններ, ՆՏԿ-ներ ու սովխոզներ, հազարավոր բանվորներ ու կոլտնտեսականներ բարձր ցուցանիշներով են կատարում ստանձնած պարտավորությունները, երկրին տալով ավելի շատ արդյունաբերական արտադրանք և ավելի շատ գյուղատնտեսական մթերքներ։

★ Երևանի արդյունաբերական ձեռնարկությունները այս տարվա 8 ամսվա համախառն արտադրանքի արտադրության պլանը կատարել են օգոստոսի 21-ին։ Թողարկված արտադրանքի աճը անցյալ տարվա նույն ժամանակամիջոցի համեմատությամբ կազմում է 14,2 տոկոս։ Այս տարի անցյալ տարվա նույն ժամանակամիջոցի համեմատությամբ ավել է արտադրվել. ավտոդողեր՝ 34,4 տոկոսով, գեներատորներ ու էլեկտրաշարժիչներ 32,6 տոկոսով, (մինչև 100 կիլովատտանոց),

տրանսֆորմատորներ՝ 33,3 տոկոսով, մետաղահատ հաստոցներ ավելի քան 2 անգամ և այլն։

★ Նախահոկտեմբերյան այս օրերին Ս. Մ. Կիրովի անվան գործարանի կոլեկտիվը 8 ամսվա համախառն արտադրանքի պլանը կատարել է 104,8 տոկոսով, տնտեսվել է 386,7 տոննա հիմնական հումք։ Գործարանում չկա թեկուզ մեկ ցեխ, որ չկատարի իր պլանը։

Գործարանը պլանից դուրս երկրին տվել է մեծ քանակությամբ արտադրանք։

★ Մեծ Հոկտեմբերի 41-րդ տարեդարձը աշխատանքային նոր հաջողություններով են նշանավորում Ավտոդողերի գործարանում, որը պլանը կատարել է 101,7 տոկոսով, էլեկտրատեխնիկական գործարանը՝ 105,9 տոկոսով, Մուլիտի գործարանը՝ 109 տոկոսով, Ալյումինի գործարանը՝ 102 տոկոսով և այլն։

★ Երևանի Ձերժինսկու անվան հաստոցաշինական գործարանի կոլեկտիվը օգոստոս ամսվա պլանը կատարել է 102,2 տոկոսով։ Այժմ կոլեկտիվը պայքարում է սեպտեմբեր և հետագա ամիսների պլանները առավել բարձր ցուցանիշներով կատարելու համար։ Մրցության բազմաթիվ առաջավորներ օրվա առաջադրանքը կատարում են 150—250 տոկոսով։

★ Երևանի յուղ-սառցարան գործարանի կոլեկտիվը կիսամյա պլանը կատարել է 113 տոկոսով, պլանով նախատեսված 5 միլիոն 324 հազար ռուբլու դիմաց երկրին տվել է 6 միլիոն 14 հազար ռուբլու



արտադրանք։ Նույն ժամանակաշրջանում արտադրանքի ինքնարժեքն իջել է 2,3 տոկոսով։

★ Երևանի երկաթուղային բաժանմունքի կոլեկտիվը հաջողությամբ կատարեց այս տարվա 7 ամսվա բեռնման և բեռնաթափման պլանը։ Պլանից դուրս տեղափոխվել է 146 հազար տոննա բեռ և կատարվել է 600 տոննա վառելանյութի խնայողություն։

★ Երևանի մեխանիկական գործարանի կոլեկտիվը ժամկետից շուտ է կատարել այս տարվա 8 ամսվա արտադրական պլանը և պլանից դուրս երկրին տվել է ավելի քան մեկ միլիոն ռուբլու արտադրանք։ Գերակատարել են նաև աշխատանքի արտադրողականության բարձրացման և արտադրանքի ինքնարժեքի իջեցման պլանները։

Կոլեկտիվը պայքարում է տարեկան պլանը կատարել ժամկետից մեկ ամիս շուտ։

★ Մեծ Հոկտեմբերի 41-րդ տարեդարձը գյուտարարության և նորարարության գործում ձեռք բերած աչքի ընկնող հաջողություններով է դիմավորում Երևանի փոքր հիդրոտուրբինների գործարանի կոլեկտիվը։ 1956 թվականին գործարանում եղել է ընդամենը 59 նորարարական առաջարկություն, 1957 թվականին՝ 81, իսկ այս տարի՝ 135։

★ Երևանի ալյումինի գործարանի կոլեկտիվը նախահոկտեմբերյան այս օրերին սիստեմատիկաբար ավելացնում է արտադրանքի թողարկումը։ Ալյումինի

արտադրության պլանը ամեն օր գերակատարվում է 1,3—1,4 տոկոսով։

★ Մեծ Հոկտեմբերի պատվին կազմակերպված սոցիալիստական մրցությունը ուժեղ թափով ծավալվում է նաև ռեսպուբլիկայի մյուս քաղաքներում։ Լենինականի մեխանիկական գործարանի կոլեկտիվը օգոստոս ամսին կատարեց 9 ամսվա արտադրական պլանը։ Այստեղ քար հղկող դազգահների թողարկումը գրեթե կրկնապատկվել է։

Այժմ կոլեկտիվն աշխատում է Հոկտեմբերի հաշվին։

★ Կիրովականի Ալ. Մյասնիկյանի անվան քիմիական կոմբինատի կոլեկտիվը գերակատարել է ութ ամսվա պլանը՝ պլանից դուրս երկրին տալով մեծ քանակությամբ պարարտանյութեր։ Այնտեղ անցյալ տարվա նույն ժամանակամիջոցի համեմատությամբ, առանց արտադրական տարածությունն ավելացնելու, քիմիկատների արտադրությունն ավելացել է 6 տոկոսով, զգալիորեն իջել է արտադրանքի ինքնարժեքը։

★ Ստեփանավանի պանրի գործարանի կոլեկտիվը տարեկան պլանը կատարել է 7 ամսում։ Պլանից դուրս գործարանը տվել է 657 ցենտներ յուղ, 647 ցենտներ տարբեր տեսակի պանիր։ Գործարանում արտադրանքի ինքնարժեքն իջել է 3,2 տոկոսով։

★ Անի-տուֆի հանքերի կոլեկտիվը դեռևս օգոստոս ամսին կատարեց տուֆի հանույթի տարեկան պլանը։ Կոլեկտիվը պարտավորվել է մինչև տարվա



վերջը ռեսպուբլիկայի նորակառույցներին տալ 35 հազար խորանարդ մետր շինաքար։

★ Անիպեմզայի հանքերի կոլեկտիվը այս տարվա 8 ամսվա պլանը կատարել է ժամկետից 5 օր շուտ։

Հանքերի կոլեկտիվը պլանից դուրս շինարարական կազմակերպություններին տվեց 35 տոննա-կտոր պեմզա, 60 հազար խորանարդ մետր մանր պեմզա և 1.200 խորանարդ մետր տուֆ։

★ Ռեսպուբլիկայի ձեռնարկությունները խոշոր աշխատանք են կատարել երեխաների համար կոշիկ և հագուստեղեն արտադրելու գործում։ Այս տարվա առաջին կիսամյակում արտադրվել է 1 միլիոն 351 հազար զույգ մանկական կոշիկ, 3 միլիոն 468 հազար 800 զույգ գուլպա և նասկի, 3 միլիոն 713 հազար 700 կտոր տրիկոտաժ սպիտակեղեն և այլն։

★ Ղափանի № 5—6 հանքի կոլեկտիվը գերակատարել է հանքաքարի պոկման և հանույթի այս տարվա յոթ ամսվա պլանը։ Մեկ բանվորի աշխատանքի միջին արտադրողականությունը բարձրացել է 11 տոկոսով և միաժամանակ կատարվել է 50 հազար ռուբլու նյութեղենի խնայողություն։

★ Շամլուղի հանքերի առաջին հանքամասում հորատողները, վագոնավարները, էլեկտրաքարշավարները մտնելով նախահոկտեմբերյան սոցիալիստական մրցության մեջ, սիստեմատիկաբար գերակատարում են արտադրական նորմաները։ Նրանցից շատերը օրվա պլանը կատարում են 150—160 տոկոսով։

★ Մեծ Հոկտեմբերի 41-րդ տարեդարձն արժանավայել գործերով են դիմավորում Աթարբեկյանի հիդրոկայանի շինարարության աշխատողները։ Հիդրոշինարարները 108,2 տոկոսով կատարելով կիսամյա պլանը, այժմ ամեն ամիս գերակատարում են շինարարական պլանները։ Միայն անցած 7 ամսում կատարվել է ավելի քան 285 հազար խորանարդ մետր հողային և 36 հազար խորանարդ մետր բետոնային աշխատանք։

★ Ի պատիվ Մեծ Հոկտեմբերի Ալավերդու պղնձաքիմիական կոմբինատի կոլեկտիվը ժամկետից 13 օր շուտ կատարեց այս տարվա 8 ամսվա արտադրական պլանը։ Խնայված է մեծ քանակությամբ էլեկտրաէներգիա և օժանդակ նյութեր, իջեցված է արտադրանքի ինքնարժեքը մոտ մեկ միլիոն ռուբլու չափով։

★ Մեծ Հոկտեմբերը աշխատանքային նոր հաջողություններով են նշանավորում նաև մեր ռեսպուբլիկայի բազմաթիվ այլ գործարաններ և ֆաբրիկաներ։

---

ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԴԵՄՈԿՐԱՏԻԱՅԻ ԵՐԿՐՆԵՐՈՒՄ

# ՉԻՆ ԺՈՂՈՎՐԴԻ ՄԵԾ ՏՈՆԸ

## Վ. ՍԻԴԻԽՄԵՆՈՎ

Հոկտեմբերի 1-ին չին ժողովուրդը, սոցիալիստական երկրների բոլոր ժողովուրդները, ամբողջ առաջադեմ մարդկությունը հանդիսավոր նշելու են Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի կազմավորման իններորդ տարեդարձը։

Իր փառապանծ տոնի օրերին չին ժողովուրդը հայրենասիրական հպարտությամբ հանրագումարի է բերում ժողովրդական իշխանության ժամանակ երկրի անցած պատմական ուղու արդյունքները, և իր ջանքերը կենտրոնացնում երկրի առջև կանգնած նոր խնդիրները կենսագործելու համար։

Չինաստանի Կոմունիստական պարտիայի 8-րդ համագումարի երկրորդ սեսիան, որը տեղի ունեցավ այս տարվա մայիսին, մշակեց սոցիալիզմի կառուցման գլխավոր գիծը։ Այն ձևակերպված է հետևյալ կերպ. «Բոլոր ուժերը լարելով, ձգտելով առաջ ըն-

թանալ, կառուցել սոցիալիզմ այս սկզբունքով՝ շատ, արագ, լավ, խնայողաբար»։ Չին ժողովրդի առջև խնդիր է դրված կարճ ժամանակամիջոցում Չինաստանը վերածել սոցիալիստական մեծ տերության, որը պետք է ունենա ժամանակակից արդյունաբերություն, ժամանակակից գյուղատնտեսություն և ժամանակակից գիտություն ու կուլտուրա։

Գլխավոր գծի դրույթներին համապատասխան, չին ժողովուրդը շարունակելով սոցիալիստական ռևոլյուցիան տնտեսական, քաղաքական և գաղափարական ֆրոնտներում, երկրում ծավալել է տեխնիկական և կուլտուրական ռևոլյուցիա։

Տեխնիկական ռևոլյուցիայի հիմնական խնդիրն այն է, որպեսզի Չինաստանի ամբողջ ժողովրդական տնտեսությունը, այդ թվում և գյուղատնտեսությունն ու տնայնագործական արդյունաբերությունը կանգնեցվի ժամանակակից ինդուստրիալ-տեխնիկական բազայի վրա։ Կուլտուրական ռևոլյուցիան կոչված է ապահովելու տեխնիկական ռևոլյուցիայի հաջող իրականացումը։

Չին ժողովրդի մտքերն ու ուժերն ուղղված են այն բանին, որպեսզի երկրում ստեղծվի մի ամբողջական արդյունաբերական սիս-



տեմ, այսինքն այնպիսի արդյունաբերություն, որը կարողանա ինքնուրույն կերպով պատրաստել ժողովրդական տնտեսության համար ցանկացած մեքենա և սարքավորում։

Դրա համար երկիրը պետք է ունենա մետալուրգիական, մեքենաշինական, վառելիքային, էներգետիկ, քիմիական և ծանր արդյունաբերության այլ կարևորագույն ճյուղեր։

Առաջին հնգամյակում (1953—1957 թ. թ.) Չինաստանում դրվեց սոցիալիստական ինդուստրացման նախնական բազան։ Այդ ժամանակ երկրում կառուցվում էր 825 խոշոր արդյունաբերական օբյեկտ, որոնցից 450-ը լիովին կամ մասնակիորեն շահագործման են հանձնված։ Ինդուստրալիզացիայի քաղաքականության հաջող իրականացման շնորհիվ առաջին հնգամյակի վերջին տարում երկիրը ստացավ 5 միլիոն 240 հազար տոննա պողպատ, 5 միլիոն 900 հազար տոննա չուգուն, 128 միլիոն տոննա քարածուխ, 19 միլարդ կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա։

Առաջին հնգամյա պլանի հաջող իրականացումը Չինաստանի Կոմունիստական պարտիային հնարավորություն տվեց երկրի առջև դնել նոր վիթխարի խնդիր՝ 15 տարում հասնել Անգլիային արդյունաբերական

արտադրանքի հիմնական տեսակների ար-
տադրությամբ: Դա լրիվ ռեալ գործ է: Ավե-
լին, ինչպես նշում է չինական մամուլը, ար-
դյունաբերության մի շարք կարևորագույն
ճյուղերում այդ խնդիրը կարող է լուծվել
սահմանված ժամկետից շուտ: Օրինակի հա-
մար վերցնենք սև մետալուրգիան: Ներկայու-
մս Անգլիան տարեկան արտադրում է 22 մի-
լիոն տոննա պողպատ: Եթե հաշվի առնենք
այդ երկրում պողպատի արտադրության աճի
դանդաղ տեմպերը (պողպատի ձուլման մի-
ջին տարեկան աճը չորս տոկոսից չի գերա-
զանցում), ապա կարելի է հաշվել, որ Անգ-
լիան 1972 թվականին կձուլի մոտավորա-
պես 40 միլիոն տոննա պողպատ: Առաջին
հնգամյակում պողպատի արտադրության մի-
ջին տարեկան տեմպերը Չինաստանում կազ-
մում էին 31,2 տոկոս: Դա նշանակում է, որ
ՉԺՌ-ն պողպատի արտադրությամբ Անգ-
լիային կհասնի ոչ թե 15 տարում, այլ ավելի
շուտ:

Չինաստանում արագ տեմպերով է աճում
նաև քարածխի հանույթը: 1958 թվականին
Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայում
արդյունահանվելու է մոտ 180 միլիոն տոն-
նա քարածուխ, այն դեպքում, երբ 1957 թը-
վականին արդյունահանվել է մոտ 130 մի-



լիոն տոննա: 1959 թվականին քարածխի
հանույթը Չինաստանում կհասցվի մինչև
240 միլիոն տոննայի: Անգլիան մյուս տա-
րի հույս ունի նույնքան քարածուխ արդյու-
նահանել: Այսպիսով, արդեն 1959 թվակա-
նին Չինաստանը կհասնի Անգլիային քա-
րածխի հանույթով:

Ինչ վերաբերում է արդյունաբերական ար-
տադրանքի մյուս տեսակներին՝ դազգահնե-
րին, ցեմենտին, քիմիական պարարտանյու-
թերին և այլն, ապա, ինչպես նշում է չինա-
կան մամուլը, ՉԺՌ-ում նույնպես լիակա-
տար հնարավորություն կա Անգլիային հաս-
նել ոչ թե 15 տարում, այլ ավելի շուտ:

Սոցիալիստական ինդուստրացման համար
մղվող պայքարում չին ժողովրդի ձեռք բե-
րած հաղթանակները չի կարելի գերագնա-
հատել: Արդեն այժմ Չինական Ժողովրդա-
կան Ռեսպուբլիկան ինքնուրույն կերպով
արտադրում է ինքնաթիռներ, ծանր հաստոց-
ներ, ավտոմոբիլներ, տրակտորներ, չափիչ
գործիքներ, գնդիկավոր առանցքակալներ,
մետաղահատ գործիքներ, սարքավորում՝
մետալուրգիական, լեռնահանքային, էներ-
գետիկ, քիմիական, նավթային, ռադիոտեխ-
նիկական արդյունաբերության համար և շատ
այլ արդյունաբերական արտադրանք, որը

նախկինում երբեք չէր արտադրվում Չինաս-տանում:

Չին ժողովուրդը մեծ հաջողությունների է հասել նաև գյուղատնտեսության բնագավա-ռում: Առաջին հնգամյա պլանի կատարման ընթացքում Չինաստանի ժողովրդական տըն-տեսությունը լուրջ դժվարություններ էր ապ-րում. գյուղատնտեսական արտադրության աճը չէր հասնում արդյունաբերական ար-տադրության աճին և երկրի ազգաբնակչու-թյան աճին:

Գյուղատնտեսական արտադրության ե-տամնացության պատճառն այն էր, որ չկար ժամանակակից նյութա-տեխնիկական բազա և գյուղատնտեսությունն ուժեղ կերպով վը-նասվում էր տարերային աղետներից: Առա-ջին հնգամյակում Չինաստանի ինդուստրիալ բազայի թուլության պատճառով արդյունա-բերությունը ի վիճակի չգտնվեց արդյունա-վետ օգնություն ցույց տալու գյուղատնտե-սությանը. տրակտորներ չէին արտադրվում, զգացվում էր քիմիական պարարտանյութե-րի մեծ պակաս, ժամանակակից գյուղա-տնտեսական մեքենաներ էին ստեղծվում մի-այն փորձնական նպատակներով:

Առաջին հնգամյակում երկրի սոցիալիս-տական ինդուստրացման նախնական բա-



զայի ստեղծման շնորհիվ պետությունը հը-նարավորություն ստացավ ավելացնել կա-պիտալ ներդրումները գյուղատնտեսության մեջ:

Տնտեսական շինարարության պահանջնե-րից գյուղատնտեսական արտադրության ե-տամնացությունը վերացնելու համար Չի-նաստանի Կոմունիստական պարտիայի Կենտկոմը 1957 թվականի վերջին մի լոզունգ առաջադրեց՝ ծանր արդյունաբերության գե-րակշիռ զարգացման հիման վրա միաժա-մանակ զարգացնել արդյունաբերությունը և գյուղատնտեսությունը: ՉԿՊ Կենտկոմը մշա-կեց գյուղատնտեսական արտադրության զարգացման վերաբերյալ կոնկրետ միջոցա-ռումներ, որոնք հրապարակվեցին որպես «ՉԺՌ գյուղատնտեսության զարգացման 1956—1957 թ. թ. հիմնական դրույթների» նախագիծ: Այդ նախագիծը, որը վերանայ-վեց ՉԿՊ Կենտկոմի կողմից 1957 թվականի հոկտեմբերին, քննարկվեց և հաստատվեց Չինաստանի Կոմունիստական պարտիայի 8-րդ համագումարի երկրորդ սեսիայում: Հե-տագայում այն կհանձնվի ժողովրդական ներկայացուցիչների Համաչինական ժողովի քննարկմանն ու հաստատմանը:

ՉԺՌ-ի գյուղատնտեսության զարգացման

հիմնական դրույթների վերանայված նախագծում առաջադրվող հիմնական խնդիրն այն է, որպեսզի 12 տարվա ընթացքում, սկսած 1956 թվականից, աշխարհագրական գոտուն համապատասխան, հողի ամեն մի մուի վրա հացահատիկային կուլտուրաների բերքատվությունը բարձրացվի մինչև 400—500—800 ցզինի (յուրաքանչյուր հեկտարի հաշվով՝ 30—37,5 և մինչև 60 ցենտների), բամբակի բերքատվությունը՝ մինչև 60—80—100 ցզինի (յուրաքանչյուր հեկտարի հաշվով՝ 4,5—6—7,5 ցենտներ)։ Խնդիր է դրվում մոտակա 3—5 տարիներում կոոպերատիվներում աշխատող բոլոր գյուղացիներին դարձնել ունևոր։

Հաշվի առնելով այն, որ Չինաստանում մշակվող հողատարածությունն անբավարար է (յուրաքանչյուր մարդուն միջին հաշվով ընկնում է ընդամենը 0,17 հեկտար հերկած հող), իսկ բնակչությունը արագորեն աճում է, գյուղատնտեսական արտադրության զարգացման հիմնական ուղղությունն է համարվում բերքատվության բարձրացումը գոյություն ունեցող հերկովի հողերում։

Չինաստանում բերքատվության բարձրացման կարևորագույն միջոցը իրիգացիան է։ Ոռոգելի դաշտերում այնտեղ հավաքում



են 50—100 տոկոսով ավելի, իսկ մի քանի դեպքերում էլ նույնիսկ 3 անգամ ավելի բերք, քան անջրդի հողերում։

Շատ դարերի ընթացքում հեղեղաջրերը ողողում են Չինաստանի հերկովի հողերի մեծ զանգվածները։ Մյուս ազգային աղետը երկրում երաշտն էր, որը արգավանդ արտերը վեր էր ածում սոված անապատների։ Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի կազմավորումից հետո ժողովուրդը համարձակ կերպով պայքարի ելավ ընդդեմ նման տարերային աղետների։

1957—1958 թվականի ձմռանը Չինաստանում սկսվեց գյուղատնտեսական արտադրության նոր շեշտակի վերելքը, որն արտահայտվեց ամենից առաջ իրիգացիոն շինարարության չտեսնված թափի մեջ։ Եթե անցյալ տարվա հոկտեմբերին երկրում իրիգացիոն աշխատանքների էին դուրս գալիս ամեն օր 20—30 միլիոն մարդ, ապա այս տարվա հունվարին դրանց թիվն ավելացավ մինչև 100 միլիոնով։

Իրիգացիոն շինարարության մասսայական շարժման ծավալումը, ինչպես նաև խոշոր իրիգացիոն կառուցումների շինարարության զուգակցումը, միջին կառուցումների շինարարության հետ, թույլ կտա արդեն 1962

թվականին ոռոգվող և ոռոգելի դաշտերի տարածությունը ավելացնել մինչև 80 միլիոն հեկտարի, որը կկազմի երկրի հերկովի հողերի ընդհանուր տարածության ավելի քան 70 տոկոսը։

Երկրում ծավալված տեխնիկական ռևոլյուցիայի կարևորագույն խնդիրներից մեկը՝ գյուղատնտեսության համար տեխնիկական բազա ստեղծելն է։ Այդ կապակցությամբ Չինաստանի Կոմունիստական պարտիան մեծ ուշադրություն է դարձնում գյուղատնտեսության մեջ մեքենայացման, քիմիացման և էլեկտրիֆիկացման արմատավորմանը։

Արդեն այս տարի չինական արդյունաբերությունը, գյուղատնտեսությանը կտա 20 հազար ավտոմոբիլ և 40 հազար տրակտոր։

Գյուղատնտեսության բարձր մթերատվության համար Չինաստանի Կոմունիստական պարտիայի մղած պայքարը արդեն տվել է իր ռեալ պտուղները։ Նախնական տվյալներով, 1958 թվականին երկրում ամառային բերքի հացահատիկի բերքահավաքը կհասնի 50,5 միլիոն տոննայի՝ 69 տոկոսով ավելի, քան անցյալ տարի։ Ամառային բերքի հացահատիկի բերքահավաքի այսպիսի ավելացումը Չինաստանի պատմության մեջ ռե-



կորդային է։ Այս տարի ցորենի համախառն բերքը 2 միլիոն տոննայով գերազանցեց ԱՄՆ-ի ցորենի համախառն բերքին։ Այս տարի, ինչպես ենթադրում են, կհավաքվի մոտ 40 միլիոն տոննա վաղահաս բրինձ՝ երկու անգամ ավելի, քան անցյալ տարվա համապատասխան ժամանակամիջոցում։

Սոցիալիստական շինարարության բնագավառում չին ժողովրդի ձեռք բերած հաջողությունները ուրախացնում են սովետական մարդկանց։ Սովետական ժողովուրդը հպարտանում է նրանով, որ Չինաստանում սոցիալիզմի կառուցման մեջ կա և իր աշխատանքի բաժինը։ Սովետական Միությունը անմիջական օգնություն է ցույց տալիս Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկային 211 խոշոր արդյունաբերական ձեռնարկությունների կառուցման գործում, որոնք հանդիսանում են չինական ծանր ինդուստրիայի հաստատուն հիմքը։

Անխախտելի է սովետական և չին ժողովուրդների բարեկամությունը՝ խաղաղության և միջազգային լարվածության մեղմացման համար մղվող պայքարի մեծ ուժը։ Դա իր ցայտուն արտահայտությունն է գտել ընկերներ Ն. Ս. Խրուշչովի և Մաո Ցզե-դունի՝ վերջերս տեղի ունեցած հանդիպման ժամա-

նակ, որը պսակվեց պատմական կոմյունիկեի ստորագրումով։ Այդ փաստաթուղթը մեկ անգամ ևս հիշեցնում է, որ Սովետական Միությունը և Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկան կանեն բոլոր հնարավորը միջազգային լարվածությունը թուլացնելու և նոր պատերազմի աղետները կանխելու համար։ Բայց եթե իմպերիալիստական ռազմամոլները կհամարձակվեն պատերազմ փաթթել ժողովուրդներին, ապա բոլոր խաղաղասեր և ազատասեր պետությունները և ժողովուրդները, սերտորեն համախմբվելով, ընդմիշտ վերջ կտան իմպերիալիստական ագրեսորներին և ամբողջ աշխարհում կհաստատեն հավիտյան խաղաղություն։

Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկան համաշխարհային մեծ տերություն է, որը աչքի ընկնող դեր է խաղում արդի միջազգային հարաբերություններում։ Իսկապես ծիծաղելի տեսք ունեն ԱՄՆ-ի կառավարող շրջանների փորձերը Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի օրավուր աճող միջազգային հեղինակությանը և ազդեցությանը խանգարելու ուղղությամբ։ Խաղաղության և ժողովուրդների միջև բարեկամության ամրապնդման քաղաքականությունը, որ վարում է Չինաստանը, ազատության և ազգային



անկախության համար Ասիայի ու Աֆրիկայի ժողովուրդների արդարացի պայքարին նրա ցույց տված աջակցությունը համապատասխանում են ամբողջ մարդկության արմատական շահերին։ Ահա թե ինչու աճում և, չնայած թշնամիների բոլոր մեքենայություններին, այսուհետև ևս կաճի չինական մեծ պետության միջազգային հեղինակությունը, նրա դերը համաշխարհային ասպարեզում։

Եղբայրական բարեկամության սերտ կապերը, խաղաղության և սոցիալիզմի համար մղվող պայքարում նպատակների և շահերի ընդհանրությունը ժողովրդական Չինաստանը կապում է Սովետական Միության հետ, ամբողջ սոցիալիստական ճամբարի հետ։

Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի իններորդ տարեդարձի օրը սովետական մարդիկ իրենց շին եղբայրներին հղում են սրտագին ողջույններ և մեծ հաջողությունների ջերմ ցանկություններ՝ նոր, սոցիալիստական կյանքի կառուցման գործում։

---

# ՏԱՅՎԱՆԸ ՉԻՆԱՍՏԱՆԻ ԱՆԲԱԺԱՆԵԼԻ ՄԱՍՆ Է

Ագիտատորներ Ժ. Անանյանը, Դ. Գզոյանը, Ս. Սարգսյանը (Երևանի պահածոների գործարան) խնդրել են տպագրել զրույց Տայվանի մասին:

*Տայվան նեղուցի շրջանում խաղաղության գործի համար միանգամայն վտանգավոր դրություն է ստեղծվել: Պատերազմի նոր օջախի ծագման վտանգը առաջացել է ամերիկյան իմպերալիստների ռազմական գործողությամբ: Նրանք սկսեցին իրենց զորքերի կենտրոնացումը այդ շրջանում: Ամերիկյան իմպերիալիստների ռազմական այդ նախապատրաստությունները զուգակցվում են ամերիկյան ռազմամոլ գեներալների և քաղաքական գործիչների հայտարարություններով, որոնք ուղղված են Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի դեմ:*

*Ընթացիկ տարվա սեպտեմբերի 4-ին, ԱՄՆ-ի պետական քարտուղար Դալեսը հայտարարություն է արել Տայվանի նեղուցի շրջանում ամերիկյան ագրեսիայի ծավալ-*



*ման մասին, որով բացեիբաց ոտնահարել է Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի անկախությանը: ԱՄՆ-ի պետական քարտուղարը իր այդ ելույթում պնդում է, թե իբր Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկան ոչ մի իրավունք չունի Տայվանի և ամերիկյան միլիտարիստների կողմից օկուպացված չինական մյուս կղզիների նկատմամբ:*

*Կասկած լինել չի կարող, որ ԱՄՆ-ի պետական քարտուղարի այդ հայտարարությունը անհեթեթություն է: Ամենքին հայտնի է, որ Տայվանը և մյուս կղզիները, որոնց մասին ակնարկում է Դալեսը, հնագույն ժամանակներից, երբ նույնիսկ գոյություն չունեին Ամերիկայի Միացյալ Նահանգները, պատկանում էին Չինաստանին և կազմում նրա անբաժանելի մասը:*

*Դալեսի հայտարարության անհեթեթությունը բացահայտելու համար անհրաժեշտ է դիմել պատմական փաստերին:*

*Մոտ հազար հինգ հարյուր տարի առաջ Տայվանի բնակիչների զգալի մասը կազմում էին չինացիները: Տայվանը գտնվում է ասիական մայր ցամաքից 200 կիլոմետրի վրա: Նա բաժանվում է կոնտինենտալ Չինաստանից Տայվանի նեղուցով: Տայվանի*

տերիտորիան 35.846 քառակուսի կիլոմետր է, բնակչությունը՝ ավելի քան 7 միլիոն։

Տայվանը իր ստրատեգիական դիրքով ու բնական հարստությամբ վաղուց ի վեր գրավում էր օտարերկրյա զավթիչների ուշադրությունը, որոնք այն դիտում էին որպես շահագործման աղբյուր և ասիական մայր ցամաքի վրա հարձակվելու կարևոր պլացդարմ։

Տայվանի վրա բազմաթիվ անգամ հարձակումներ են գործել ֆրանսիացիները, անգլիացիները, հոլանդացիները, բելգիացիները և ճապոնացիները։ Սակայն 1894—1895 թվականներին Ճապոնիան հափշտակողական պատերազմ մղելով Չինաստանի դեմ, զավթեց Տայվանը։

Տայվանում ճապոնական օկուպացիան տևեց 50 տարի, բայց այդ տարիների ընթացքում Տայվանի բնակչությունը չդադարեցրեց իր պայքարը օտարերկրյա բռնակալների դեմ։ Նա անընդհատ պայքարում էր հանուն այն բանի, որ Տայվանը Չինաստանին վերադարձվի։ Ճապոնական գաղութարարները դաժան դատաստան տեսան չինական հայրենասերների հետ։ Միայն 1898—1902 թվականներին, համաձայն ճապոնական պաշտոնական տվյալների, գնդակահարվել են 11.950 չինական «ըմբոստներ»։ Տայվանի



ժողովրդական մասսաները հետագայում էլ չընդհատեցին անկախության համար իրենց պայքարը։ Նրանք 1912—1915 թվականներին, ինչպես նաև 1930 թվականին պայքարի դուրս եկան ճապոնական օկուպանտների դեմ։

Չինաստանի օգտին է խոսում Կահիրեի 1943 թվականի դեկտեմբերի 1-ի Դեկլարացիան, որը ստորագրվել է ԱՄՆ-ի, Անգլիայի և Չինաստանի կողմից։ Ըստ այդ դեկլարացիայի, նախատեսվում էր Չինաստանին վերադարձնել Մանջուրիան, Տայվանը և Պեսկադորյան կղզիները։

Պոտսդամի 1945 թվականի հուլիսի 26-ի դեկլարացիան, որը ստորագրվել է ԱՄՆ-ի, Չինաստանի, Մեծ Բրիտանիայի կողմից և որին միացել է Սովետական Միությունը, պաշտպանեց Կահիրեի դեկլարացիան։

Այսպիսով, Ճապոնիայի կապիտուլյացիայից հետո Տայվան կղզին դարձավ Չինաստանի անբաժանելի մասը։ Բայց շուտով կղզին Չինաստանից բռնի կերպով անջատվեց։ Չինաստանից դուրս շպրտված Չան Կայ-շիի կլիկը և գոմինդանի բանդայի մնացուկները փախան Տայվան կղզին և այնտեղ Ամերիկայի Միացյալ Նահանգների զինված ուժերի ակտիվ պաշտպանության տակ թաք-

նըվեցին։ Այդ օրվանից ամերիկյան ռազմամոլները դարձան չինական կղզու անկոչ տերերը։ Գոմինդանական վիժվածքների հետ միասին, նրանք Տայվանը վեր են ածել ամերիկյան իմպերիալիստների խաղաղօվկիանոսյան գլխավոր բազաներից մեկը, որը ուղղված է Սովետական Միության և Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի դեմ։ Ամերիկյան ագրեսորները Տայվան կղզում կառուցել են տասնյակ ռազմական օդանավակայաններ։ Կղզին շրջապատող ջրերը վերահսկում է ամերիկյան 7-րդ նավատորմը։

Ամերիկյան կառավարության ագրեսիվ գործողությունները ամբողջությամբ հակասում են ժամանակակից միջազգային իրավունքի տարրական սկզբունքներին։

Այսպիսով, Տայվանը Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի տերիտորիայի անբաժանելի մասն է, որի օրինական կառավարությունը Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի կառավարությունն է։ Ահա թե ինչու Տայվանում բույն դրած գոմինդանական կլիկի մնացորդների լիկվիդացումը Չինաստանի ներքին գործն է։ Իսկ Ամերիկայի Միացյալ Նահանգների զինված միջամտությունը Չինաստանի ներքին գործերին նշանակում է միջազգային իրավունքի կոպիտ



խախտում, և այն պետք է դիտվի Չինաստանի նկատմամբ ագրեսիայի ակտ՝ ԱՄՆ-ի կողմից։

Ահա թե ինչու 600 միլիոնանոց չին ժողովուրդը միահամուռ կերպով հանդես է գալիս հանուն Տայվանի ազատագրման և խաղաղության։

Թշնամիների և ոչ մի փորձ չի կարող խոչընդոտել լուծելու չին ժողովրդի պատմական այդ խնդիրները։ Չին ժողովուրդը վստահ է իր ուժերին։ Նրա կողմն է իրավունքը և արդարությունը, բոլոր խաղաղասեր ժողովուրդների համակրանքն ու աջակցությունը։

Ս. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ

# ԹԵՄԱՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ՀՈԿՏԵՄԲԵՐ ԱՄՍՎԱ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## 1. Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 41-րդ տարեդարձը

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Պրոլետարիատի խնդիրների մասին տվյալ ռևոլյուցիայում, *Երկեր, հատոր 24, էջ 1—9, Հայպետհրատ, 1951։*

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Ի՞նչ է Սովետական իշխանությունը, *Երկեր, հատոր 29, էջ 295—296, Հայպետհրատ, 1951։*

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Հոկտեմբերյան ռևոլյուցիայի չորսամյա տարեդարձի առթիվ, *Երկեր, հատոր 33, էջ 37—48, Հայպետհրատ, 1952։*

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի հիսուն տարին *(1903—1953), Հայպետհրատ, 1953։*



Ի. Վ. ՍՏԱԼԻՆ— *Հոկտեմբերյան ռևոլյուցիայի միջազգային բնույթը, Երկեր, հատոր 10, էջ 271—284, Հայպետհրատ, 1949։*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— *Զեկուցում Պարտիայի 20-րդ համագումարին, Հայպետհրատ, 1956։*

## 2. Աշխատանքային նոր հաջողություններով դիմավորենք ՍՄԿՊ 21-րդ արտահերթ համագումարը

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի կանոնադրությունը:

Ինֆորմացիոն հաղորդագրություն Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեի պլենումի մասին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1958 թվականի սեպտեմբերի 7-ի համարում։*

ՍՄԿՊ 21-րդ արտահերթ համագումար հրավիրելու մասին, ՍՄԿՊ Կենտկոմի պլենումի որոշումը՝ *ընդունված 1958 թվականի սեպտեմբերի 5-ին, տպագրված «Ս. Հ.»-ի 1958 թվականի սեպտեմբերի 7-ի համարում։*

Դեպի Սովետական Միության Կոմունիստական պարտիայի 21-րդ համագումարը, *«Պրավդա»-ի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի 1958 թվականի սեպտեմբերի 9-ի համարում։*

## 3. Կոմունիստական պարտիան մեր հաղթանակների կազմակերպիչն ու ոգեշնչողն է

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Ճառ կոմունիստական պարտիայի դերի մասին, *Երկեր, հատոր 31, էջ 283—289, Հայպետհրատ, 1952։*

Սովետական Միության կոմունիստական պարտիայի հիսուն տարին *(1903—1953), Հայպետհրատ, 1953։*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Զեկուցում Պարտիայի 20-րդ համագումարին, *Պարտիան, էջ 150—187, Հայպետհրատ, 1956։*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Ճառ Բուլղարիայի կոմունիստական պարտիայի 7-րդ համագումարում, *տպագրված է «Ս. Հ.»-ի 1958 թվականի հունիսի 7-ի համարում։*

## 4. Լենինյան կոմերիտմիությունը կոմունիստական պարտիայի ռեզերվն ու մարտական օգնականն է

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Երիտասարդության միությունների խնդիրները, *Երկեր, հատոր 31, էջ 343—366, Հայպետհրատ, 1952։*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Հաշվետու զեկուցում ՍՄԿԿ 20-րդ համագումարին, *էջ 171, Հայպետհրատ, 1956։*



Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Դաստիարակել կոմունիստական հասարակության ակտիվ և գիտակից կառուցողներ, Ճառ ՀամԼԿԵՄ 13-րդ համագումարում, *տպագրված «Ս. Հ.»-ի 1958 թվականի ապրիլի 19-ի համարում։*

Կոմունիզմի երիտասարդ կառուցողների համագումարը, *տպագրված «Ս. Հ.»-ի 1958 թվականի ապրիլի 16-ի համարում։*

## 5. Ամեն կերպ իջեցնել արտադրանքի ինքնարժեքը

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Աշխատանքի արտադրողականության բարձրացումը, *Երկեր, հատոր 27, էջ 306—310 Հայպետհրատ, 1951։*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Ճառ Կույբիշևի հիդրոէլեկտրակայանի շինարարության ավարտմանը նվիրված միտինգում, *տպագրված «Ս. Հ.»-ի 1958 թվականի օգոստոսի 12-ի համարում։*

## 6. Բարձր կազմակերպվածությամբ կատարենք բամբակի, շաքարի ճակնդեղի, կարտոֆիլի և բանջարա-բոստանային կուլտուրաների բերքահավաքը

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Ճառ ՌՍՖՍՌ Հյուսիս-արևմուտքի մարզերի և ավտոնոմ ռեսպուբլիկաների

գյուղատնտեսության աշխատողների խորհրդակցությունում, *տպագրված «Ս. Հ.»-ի 1957 թվականի մայիսի 25-ի համարում։*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ Հանուն սովետական բամբակագործության նետագա վերելքի, ճառ բամբակագործների համամիութենական խորհրդակցությունում, *տպագրված «Ս. Հ.»-ի 1958 թվականի փետրվարի 22-ի համարում։*

Վնասարար արագացնել բերքահավաքի տեմպերը, *«Ս. Հ.»-ի 1958 թվականի օգոստոսի 30-ի առաջնորդողը։*

## 7. Չինական ժողովրդական Ռեսպուբլիկայի նոշակումը
## 8. Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբլիկայի նոշակումը
## 9. ԱՄՆ-ի իմպերիալիստական ագրեսիան ՉԺՌ-ի դեմ

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ամերիկյան մամուլը Հեռավոր Արևելքի շրջանում ԱՄՆ-ի պրովոկացիոն գործողությունների մասին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1958 թվականի սեպտեմբերի 5-ի համարում։*

Չինաստանի կառավարության Դեկլարացիան Չինաստանի տերիտորիալ ջրերի մասին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1958 թվականի սեպտեմբերի 6-ի համարում։*



ՉԺՌ-ի Պետական խորհրդի պրեմիեր Չժոու Էնլայի հայտարարությունը Տայվանի նեղուցի շրջանում առեղծված իրադրության մասին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1958 թվականի սեպտեմբերի 9-ի համարում։*

*ՍՍՌՄ Մինիստրների Սովետի Նախագահ Ն. Ս. Խրուշչովի ուղերձը ԱՄՆ-ի պրեզիդենտ Դ. Էյզենհաուերին, տպագրված «Ս. Հ.»-ի 1958 թվականի սեպտեմբերի 10-ի համարում։*

---

## СОДЕРЖАНИЕ



---

Խմբագիր՝ Վ. ԲԶՆՈՒՆԻ